Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 7 (26)

«Սովետական Հայաստան» թերթի
հրատարակչություն
1945

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



# ՊԱՐՏԻԱԿԱՆ ՍԿԶԲՆԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՆ ԿԻՑ ՔԱՂԴՊՐՈՑՆԵՐԻ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՕՐԻՆԱԿԵԼԻ ՊԼԱՆԸ

*ՀամԿ(բ)Պ Կենտկոմը «Մասսայական-քաղաքական և իդեոլոգիական աշխատանքի վիճակի ու բարելավման միջոցառումների մասին Թաթարական պարտիական կազմակերպությունում» որոշման մեջ ՀամԿ(բ)Պ Թաթարական մարզկոմին առաջարկել է ձմեռային ժամանակաշրջանում (1944 թվի դեկտեմբերի 1-ից) ընդլայնել գյուղի պարտիական սկզբնական կազմակերպություններին կից դպրոցների ցանցը՝ գյուղական կոմունիստներին և կոմերիտականներին սովորեցնելու համար։*

Այս տարի քաղդպրոցների ցանցը զգալի չափով ընդարձակվել է մեր երկրի շատ մարզերի պարտիական կազմակերպություններում: Վերջերս ՀամԿ(բ)Պ Մոսկվայի կոմիտեն որոշում կայացրեց գյուղի պարտիական սկզբնական կազմակերպություններին կից քաղդպրոցներ կազմակերպելու մասին: ՀամԿ(բ)Պ Մոսկվայի կոմիտեն պարտիայի քաղկոմներին և շրջկոմներին առաջարկեց սկզբնական պարտկազմակերպություններին կից քաղդպրոցների ծրագրի մեջ մտցնել «ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթացի» ուսումնասիրումը ըստ հիմնական էտապների և ընկեր Ստալինի «Սովետական Միության Հայրենական մեծ պատերազմի մասին» գրքի ուսումնասիրումը, ու այդ դպրոցներում ուսման տևողությունը սահմանել 3—4 ամիս. քաղդպրոցների պարապմունքները առաջարկված է անցկացնել շաբաթական մեկ-երկու անգամ, 4-ական ժամ: ՀամԿ(բ)Պ Մոսկվայի կոմիտեն գյուղի պարտիական սկզբնական կազմակերպություններին կից քաղդպրոցների ղեկավարությունը դրել է պարտիայի շրջկոմների հաստիքային պրոպագանդիստների վրա և հաստատել է քաղդպրոցների օրինակելի ու-



սումնական պլանը, որը հրապարակվում է «Պրոպագանդիստ» ժուռնալում:

## ՊԱՐՏԻԱԿԱՆ ՍԿԶԲՆԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՆ ԿԻՑ ՔԱՂԴՊՐՈՑՆԵՐԻ ՕՐԻՆԱԿԵԼԻ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՊԼԱՆԸ

1. «ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց» (ըստ հիմնական էտապների) . . . 56 ժամ
2. Ընկեր Ստալինի «Սովետական Միության Հայրենական մեծ պատերազմի մասին» գիրքը . . . 24 ժամ

Ընդամենը . 80 ժամ

## ՀԱՄԿ(Բ)Պ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՌՈՏ ԴԱՍԸՆԹԱՑ

(Ըստ հիմնական էտապների)

Ղեկավարի ներածական զրույցը

Զրույցի համառոտ բովանդակությունը.—Ի՞նչ բան է պարտիան: ՀամԿ(բ)Պ որպես նոր տիպի մարքսիստական պարտիա: Լե-

նինը և Ստալինը որպես բոլշևիկյան պարտիայի առաջնորդներ և կազմակերպիչներ։ Վ. Ի. Լենինի և Ի. Վ. Ստալինի կյանքի ու գործունեության հիմնական մոմենտները։ Ի՞նչ բան է մարքսիզմ-լենինիզմը։ Ինչպիսի՞ թշնամիների դեմ մղվող պայքարում ստեղծվեց, աճեց ու ամրապնդվեց բոլշևիկների պարտիան։ ՀամԿ(բ)Պ պատմությունը Ռուսաստանում տեղի ունեցած երեք ռևոլյուցիաների պատմությունն է։ ՀամԿ(բ)Պ պատմությունը քաղաքացիական պատերազմի ժամանակաշրջանում օտարերկրյա զինված ինտերվենցիայի ջախջախման պատմությունն է, սովետական պետության և մեր երկրում սոցիալիստական հասարակության կառուցման պատմությունը, Սովետական Միության Հայրենական մեծ պատերազմի ժամանակ գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ հաղթանակ տանելու համար

մղվող պայքարի պատմությունը։ Բոլշևիկների պարտիայի պատմության երեք հիմնական էտապները։ «ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթացը» բոլշևիկների գիտական պատմությունն է, մարքսիզմ-լենինիզմի հիմնական գիտելիքների էնցիկլոպեդիան . . . . . . . . 4 ժամ

## ՀԱՄԿ(Բ)Պ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԻՆ ԷՏԱՊԸ

### Բոլշևիկյան պարտիա ստեղծելու համար մղված պայքար

*(ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթացի» 1—4-րդ գլուխները)*

Զրույց.— Ռուսաստանում սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիա ստեղծելու համար մղված պայքարը (1883—1901 թ. թ.) . . . . . . . 2 ժամ

Զրույց.—Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիայի կազմակերպումը։ Պարտիայի ներսում բոլշևիկների ու մենշևիկների ֆրակցիաների

առաջ գալը (1901—1904 թ. թ.) 2 ժամ

Զրույց.— Մենշևիկները և բոլշևիկները ռուս-ճապոնական պատերազմի և ռուսական առաջին ռևոլյուցիայի ժամանակաշրջանում (1904—1907 թ. թ.) . . . . 2 ժամ

Զրույց.— Մենշևիկները և բոլշևիկները ստոլիպինյան ռեակցիայի ժամանակաշրջանում։ Բոլշևիկների ձևավորումը որպես մարքսիստական ինքնուրույն պարտիա (1908—1912 թ. թ.) . . . . 2 ժամ

Ամփոփիչ զրույց ՀամԿ(բ)Պ պատմության առաջին էտապի մասին 2 ժամ

## ՀԱՄԿ(Բ)Պ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԵՐԿՐՈՐԴ ԷՏԱՊԸ

### Բոլշևիկների պարտիայի պայքարը պրոլետարիատի դիկտատուրայի համար

*(«ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթացի» 5—7-րդ գլուխները)*

Զրույց.— Բոլշևիկների պարտիան առաջին իմպերիալիստական պատերազմի նախօրյակին, բանվորական շարժման վերելքի տարիներին (1912—1914 թ. թ.) . . 2 ժամ

Զրույց.— Բոլշևիկների պարտիան իմպերիալիստական պատերազմի



ժամանակաշրջանում։ Ռուսաստանի երկրորդ ռևոլյուցիան (1914 թվից մինչև 1917 թվի մարտը) . 2 ժամ

Զրույց.— Բոլշևիկների պարտիան Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի նախապատրաստման և կատարման ժամանակաշրջանում (1917 թվի ապրիլից—1918 թ.) . . . . . . . . . 2 ժամ

Ամփոփիչ զրույց ՀամԿ(բ)Պ պատմության երկրորդ էտապի մասին 4 ժամ

## ՀԱՄԿ(Բ)Պ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԵՐՐՈՐԴ ԷՏԱՊԸ

### Բոլշևիկների պարտիան իշխանության գլուխ անցած ժամանակաշրջանում

*(«ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթացի 8—12-րդ գլուխները)*

Զրույց.— Բոլշևիկների պարտիան օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի և քաղաքացիական պատերազմի ժամանակաշրջանում (1918—1920 թ. թ.) . . . 2 ժամ

Զրույց.— Բոլշևիկների պարտիան ժողովրդական տնտեսության վերականգնման խաղաղ աշխատանքին անցնելու ժամանակաշըր-

ջանում (1921—1925 թ. թ.) . . . 2 ժամ

Զրույց.— Բոլշևիկների պարտիան երկրի սոցիալիստական ինդուստրացման համար մղվող պայքարում (1926—1929 թ. թ.) . . . 2 ժամ

Զրույց.— Բոլշևիկների պարտիան գյուղատնտեսության կոլեկտիվացման համար մղվող պայքարում (1930—1934 թ. թ.) . . . 2 ժամ

Զրույց.— Գյուղատնտեսական արտելի ստալինյան կանոնադրությունը . . . . . . . . . . 2 ժամ

Զրույց.— Բոլշևիկների պարտիան սոցիալիստական հասարակության շինարարության ավարտման համար մղվող պայքարում և Նոր Կոնստիտուցիայի անցկացումը (1935—1937 թ. թ.) . . 2 ժամ

Զրույց.— 1936 թվին Սովետների Համամիութենական 8-րդ Արտակարգ Համագումարի ընդունած Նոր Կոնստիտուցիան . . . . 4 ժամ

Զրույց.— ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարը և 18-րդ կոնֆերանսը . 2 ժամ

Զրույց.— Պարտիայի 18-րդ համա-



գումարի հաստատած ՀամԿ(բ)Պ Կանոնադրությունը . . . . . 4 ժամ

Զրույց.— Բոլշևիկների պարտիան Սովետական Միության Հայրենական մեծ պատերազմի ժամանակաշրջանում . . . . . 2 ժամ

Ամփոփիչ զրույց պարտիայի պատմության երրորդ էտապի մասին 4 ժամ

Եզրափակիչ զրույց. ի՞նչ է սովորեցնում ՀամԿ(բ)Պ պատմությունը . . . . . . . . . 2 ժամ

«ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթացի» եզրափակումը։

Ընդամենը 56 ժամ

## ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻ «ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ» ԳԻՐՔԸ

Ղեկավարի ներածական զրույցը.— Ի՞նչ է սովորեցնում ընկեր Ստալինի «Սովետական Միության Հայրենական մեծ պատերազմի մասին» գիրքը . . . . 2 ժամ

Զրույց.— Պաշտպանության Պետա-

կան Կոմիտեի Նախագահ ընկեր Ստալինի ռադիոճառը 1941 թ. հուլիսի 3-ին . . . . . . . 2 ժամ

Զրույց.— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 24-րդ տարեդարձը։ Պաշտպանության Պետական Կոմիտեի Նախագահ ընկեր Ստալինի 1941 թվի նոյեմբերի 6-ի զեկուցումը։ Պաշտպանության Պետական Կոմիտեի Նախագահ և Պաշտպանության Ժողովրդական Կոմիսար ընկեր Ստալինի ճառը Կարմիր Հրապարակում 1941 թ. նոյեմբերի 7-ին . . . . . . . . 2 ժամ

Զրույց.— Պաշտպանության Ժողովրդական Կոմիսար ընկեր Ստալինի 1942 թվի փետրվարի 23-ի № 55 հրամանը։ Պաշտպանության Ժողովրդական Կոմիսար ընկեր Ստալինի 1942 թվի մայիսի մեկի № 130 հրամանը . 2 ժամ

Զրույց.— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 25-րդ տարեդարձը։ Պաշտպանության Պետական Կոմիտեի Նախագահ ընկեր Ստալինի 1942 թվի նոյեմբերի 6-ի զեկուցումը։ Պաշտպանության Ժողովրդական Կոմիսար ընկեր Ստալինի 1942 թվի նոյեմբերի 7-ի № 345 հրամանը . . . . . . . . 2 ժամ



Զրույց.— Գերագույն Գլխավոր Հրամանատար ընկեր Ստալինի 1943 թվի փետրվարի 23-ի № 95 հրամանը։ Գերագույն Գլխավոր Հրամանատար ընկեր Ստալինի 1943 թվի մայիսի 1-ի № 195 հրամանը . . . . . . . . . 2 ժամ

Զրույց.— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 26-րդ տարեդարձը։ Պաշտպանության Պետական Կոմիտեի Նախագահ ընկեր Ստալինի 1943 թվի նոյեմբերի 6-ի զեկուցումը։ Գերագույն Գլխավոր Հրամանատար ընկեր Ստալինի 1943 թվի նոյեմբերի 7-ի № 309 հրամանը 2 ժամ

Զրույց.— Գերագույն Գլխավոր Հրամանատար ընկեր Ստալինի 1944 թվի փետրվարի 23-ի № 16

հրամանը։ Գերագույն Գլխավոր Հրամանատար ընկեր Ստալինի 1944 թվի մայիսի 1-ի № 70 հրամանը . . . . . . . . . . 2 ժամ

Ցույց.— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 27-րդ տարեդարձը։ Պաշտպանության Պետական Կոմիտեի Նախագահ ընկեր Ստալինի 1944 թվի նոյեմբերի 6-ի զեկուցումը։ Գերագույն Գլխավոր Հրամանատար ընկեր Ստալինի 1944 թվի նոյեմբերի 7-ի № 220 հրամանը 6 ժամ

Ցույց.— Կոլխոզային կարգը Հայրենական պատերազմի տարիներին։ Կոլխոզային գյուղացիության խնդիրները Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 27-րդ տարեդարձի մասին ընկեր Ստալինի տված զեկուցման և հրամանի լույսի տակ 2 ժամ

Ընդամենը 24 ժամ

(«Պրոպագանդիստ», № 22, 1944 թ.)



# ԲՈՒԼՂԱՐԻԱ

(ՏԵՂԵԿԱՆՔ)

Բուլղարիան 485 տարի տառապում էր սուլթանական Թյուրքիայի տիրապետության տակ և միայն 1877—1878 թթ. ռուս-թյուրքական պատերազմի շրջանում, ռուս զինվորների հերոսության և խիզախության շնորհիվ ազատագրվեց ու հիմք դրվեց Բուլղարական երրորդ պետականությանը։

1878 թ. մարտի 3-ին Սան-Ստեֆանո գյուղում (Ստամբուլի մոտ) կնքված խաղաղության պայմանագրի համաձայն, Բուլղարիայի սահմանները տարածվելու էին Սև ծովի ափերից մինչև Պրեսպա և Օխրիդա լճերը, հյուսիսում՝ Դանուբ գետը և հարավում՝ Էգեյան ծովը։

Իր անկախ գոյության օրերից Բուլղարիան միշտ էլ ուժեղ է գերմանական

իմպերիալիզմի դավերից և միջամտություններից: 1878 թ. հուլիսի 13-ին Բեռլինի կոնգրեսը, Սան-Ստեֆանոյի պայմանագրով տրված Բուլղարիայի սահմանները մասնատելով, «Մեծ Բուլղարիան» բաժանեց երեք մասի — Մակեդոնիան նորից մնաց Օսմանյան կայսրության կազմում, Բալկանյան լեռներից հարավ ընկած մասում կազմվեց Արևելյան Ռումելիա ավտոնոմ պրովինցիան, որը ղեկավարելու էր սուլթանի գերիշխանության ներքո, Դոբրուջայի հյուսիսային մասը տրվեց Ռումինիային, իսկ Բուլղարիայի արևմտյան հողերի մի մասը՝ Սերբիային: Այսպիսով Բուլղարիայի կազմի մեջ մնաց Բալկանների և Դանուբի միջև ընկած հարթությունը: 1885 թ. սեպտեմբերին տեղի ունեցավ Արևելյան Ռումելիայի միացումը Բուլղարիային: Իր անկախությունն ու երկրի ամբողջականությունը պաշտպանելու համար Բուլղարիան ստիպված էր մշտապես պայքարել Գերմանիայի և նրա դրդմամբ հանդես եկող այլ երկրների կողմից սպառնացող դավերի ու վտանգների դեմ:

Նախապատրաստվելով առաջին համաշխարհային պատերազմին, Գերմանիան հետևելով



«բաժանիր ու տիրիր» իր ստոր քաղաքականության, խարդավանքներ էր լարում և բորբոքում հակասությունները՝ քայքայելու համար Բալկանյան պետությունների միությունը, որ կազմակերպվել էր 1912 թվին մասնակցությամբ Բուլղարիայի, Սերբիայի, Չերնոգորիայի և Հունաստանի: Բալկանյան առաջին պատերազմի (1912 թ. հոկտեմբերի 9-ին) հրանոթները դեռ չլռած, պայթեց Բալկանյան երկրորդ պատերազմը (1913 թ. հունիսին), երբ Սերբիան, Հունաստանը, Թյուրքիան, ապա՝ Ռումինիան հարձակվեցին Բուլղարիայի վրա: Բուխարեստի խաղաղության պայմանագրի համաձայն սպառված Բուլղարիայի տերիտորիան ենթարկվեց նոր մասնատման — Ռումինիային միացվեց Դոբրուջայի գավառը, Սիլիստրայի հետ միասին, Հունաստանն ու Սերբիան բաժանեցին Մակեդոնիան, միաժամանակ Սերբիայի օգտին վերանայվեցին Բուլղարիայի արևմտյան սահմանները, Թյուրքիային անցավ ամբողջ արևելյան Թրակիան: Բուլղարիային մնաց արևմտյան Թրակիայի մի մասը՝ Կսանտի, Դեդե-Աղաչ և Կավալա քաղաքներով:

Նկատի ունենալով Բուլղարիայի աշխար-

Հաղթական դերը, Գերմանիան իր իմպերիալիստական արշավանքների արևելյան պլանների մեջ մինչև էլ կարևոր տեղ է հատկացրել նրան: Առաջին համաշխարհային պատերազմի՝ շրջանում Բուլղարիան առանձնապես կարևոր նշանակություն ուներ Գերմանիայի համար, որպես Թյուրքիային սահմանակից երկիր և պլացդարմ Բալկաններում պատերազմական գործողություններ ծավալելու համար: Բուլղարիային խոստանալով բավարարել նրա տերիտորիալ պահանջները Բալկաններում, Գերմանիան միաժամանակ, հրահրեց նրա ռեվանշիստական տրամադրությունները և 1915 թվին նրան քաշեց պատերազմի մեջ, որպես դաշնակցի:

Բուլղարական խոշոր բուրժուազիայի և հողատերերի ավանտյուրիստական շրջանների համագործակցությունը գերմանական իմպերիալիզմի հետ, երկիրը քաղաքական և տնտեսական փլուզման եզրին հասցրին: Գերմանիայի պարտության հետ միասին, պարտվեց և Բուլղարիան: Այդ պատերազմում Բուլղարիան ունեցավ 88.000 սպանված, 200 000 վիրավոր, զրկվեց Էգեյան ծովի հետ կապ ունենալուց, Թրակիան ամբողջապես անցավ Հունաստանին, Հարավսլավ-



յին Դոբրուջան, որ պատերազմի ժամանակ նորից գրավել էր, անցավ Ռումինիային, Մակեդոնիայի մի մասը՝ Հարավսլավիային: Բուլղարիան պարտավորվեց 37 տարվա ընթացքում վճարել 2¼ միլիարդ ոսկի ֆրանկ պարտահատուցում: Սրանք եղան Բուլղարիայի՝ Գերմանիայի հետ իմպերիալիստական պատերազմի ժամանակ համագործակցության պտուղները:

Բուլղարիայի ներկայիս տարածությունը կազմում է 103.146 քառ. կիլոմետր: Երկրի սահմանագծերը կազմում են 2303 կիլոմետր, որից ջրային սահմանագիծը կազմում է 855 կիլոմետր (Դանուբի հետ՝ 471 կմ., Սև ծովի հետ 384 կմ.): Բուլղարիային արևմուտքից սահմանակից է Հարավսլավիան, հարավից՝ Հունաստանը և Թյուրքիան, հյուսիսից՝ Ռումինիան, որի հետ Բուլղարիայի բնական սահմանագիծն է կազմում Դանուբ գետը՝ Տիմոկ վտակի գետաբերանից մինչև Սիլիստրիա քաղաքը, իսկ Արևելքից՝ Սև ծովը: Երկրի ռելյեֆը լեռնային է և միջին բարձրությունը ծովի մակերևույթից կազմում է 480 մետր: Բալկանյան կամ Ստարա Պլանինա լեռնաշղթան բուլղարական-հարավսլավական սահմանից ձգվում է մինչև

Սև ծովի ափերը, Բուլղարիան բաժանելով հարավային և հյուսիսային մասերի: Լեռների միջև ձգված արգավանդ և խիտ բնակեցված հովիտներն աչքի են ընկնում հարավային, հատուկ բարձրարժեք կուլտուրաների մշակությամբ՝ վարդ, խաղող, պտուղներ, ծխախոտ, բամբակ և այլն: Հյուսիսում տարածվում է Դանուբյան հարթությունը (18.000 քառ. կիլոմետր), որը հանդիսանում է երկրի ամենաբերրի շրջանը: Բուլղարիան հարուստ է գետերով, որոնցից նշանավորներն են Դանուբ գետը (2350 կմ. ընդհանուր երկարությունից 966 կմ. հոսում է Բուլղարիայի սահմաններով), Մարիցա (490 կմ. ընդհանուր երկարությունից 339 կմ. հոսում է Բուլղարիայի տերիտորիայով), Թունջա, Վարդար և Ստրումա: Կլիման մեղմ է, տեղումները բավարար, Փլորան հարուստ (երկրի տարածության 1/3-ը ծածկված է անտառներով, 100 բնակչին միջին հաշվով հասնում է 53 հեկտար անտառ):

Բուլղարիայի բնակչությունը 1939 թ. տվյալներով կազմում էր 6.305.000 մարդ, իսկ 1940 թ. բարձրացավ, կլոր թվով, 6.800.000 մարդու: Բուլղարները կազմում են բնակչության 86.8 տոկոսը, թյուրքերը՝



10—11 տոկոս, գնչուները՝ 1,3 տոկոս: Կան նաև ռումիններ, հրեաներ, սերբեր, ռուսներ և ազգային այլ խմբեր: Բուլղարիայում ապրում են մոտ 27.500 հայեր, կազմելով բնակչության 0,5 տոկոսը: Բուլղարիայում մեծ քաղաքներ քիչ կան: 96 քաղաքներից 85-ն ունեն 20.000-ից պակաս բնակիչ և միայն երկուսը 100.000-ից ավելի բնակիչ: Նշանավոր քաղաքներից են մայրաքաղաք Սոֆիան, որն արդյունաբերական և տրանսպորտային կարևորագույն հանգույց է. նրա վրայով է անցնում Բեռլին-Ստամբուլ երկաթուղին, գտնվում է Իսկր գետից ոչ հեռու, Վիտոշ լեռան ստորոտում, ունի 387.000 բնակիչ: Պլովդիվը (Ֆիլիպոպոլ) հիմնըված է մեր թվականությունից առաջ 4-րդ դարում, հնագույն առևտրական քաղաք է և հայտնի իր տոնավաճառներով: Ներկայումս արդյունաբերական կարևոր կենտրոն է (ծխախոտի, կաշվի և տեքստիլ արդյունաբերության), նրա միջով անցնում է Մարիցա գետը, ունի 106.000 բնակիչ: Վառնա նավահանգիստը Սև ծովի ափին, ունի 75.000 բնակիչ, Բուրգասը— երկրի խոշորագույն նավահանգիստն է, բայց Վառնայի նավահանգստից վատ սարքա-

վորված և ունի 37.000 բնակիչ, Ռուսսե (Ռուշչուկ), որ ունի 49.447 բնակիչ: Բնակչության 20 տոկոսից ավելին կազմում են բանվորներն ու ծառայողները. (մոտ մեկ միլիոն բանվորներ և ¼ միլիոն ծառայողներ), զգալի թիվ են կազմում տնայնագործները (աշակերտների հետ միասին— 100.000-ից ավելի): Բնակչության 78 տոկոսից ավելին ապրում են գյուղում: Չնայած Բուլղարիայում գոյություն ունի տարրական դպրոցի պարտադիր ուսուցման օրենքը, բայց և այնպես բնակչության մեջ անգրագետների տոկոսը խիստ մեծ է (31,5 տոկոս, կանանց մեջ 42,8%): Երկրում կա միայն մեկ համալսարան Սոֆիայում, որի ուսանողների քանակը մինչև պատերազմը 6.000-ի էր հասնում: Բուլղարիան վարչականորեն բաժանված է յոթ մարզերի՝ Բուրգաս, Վրատցա, Պլևեն, Պլովդիվ, Սոֆիա, Ստարա Զագորա, Շումեն: Մարզերը բաժանվում են 89 օկոլիյի (գավառի), օկոլիները՝ 1213 համայնքի: Բուլղարիայում բնակելի կետերի քանակը 5751-ի է հասնում, որից 98,3 տոկոսը կազմում են գյուղական և միայն 1,7 տոկոսը քաղաքային:

Բուլղարիան աչքի է ընկնում մանր գյու-



ղացիական տնտեսություններով: 1926 թ. վիճակագրական տվյալներով 750.613 գյուղացիական տնտեսություններ, ըստ հողօգտագործման, բաժանվում էին հետևյալ խմբերի՝ մինչև 5 հեկտար հող ունեցող տնտեսությունները կազմում էին գյուղացիական տնտեսությունների 56.9 տոկոսը, որոնց պատկանում էր մշակվող հողերի 23,6 տոկոսը: 20 և ավելի հեկտար ունեցող տնտեսությունները կազմում էին բոլոր տնտեսությունների 2,4 տոկոսը, որոնց պատկանում էր մշակվող հողերի 12,7 տոկոսը: Հողամշակումը թույլ է մեքենայացված. օգտագործվում են փայտյա գութաններ, արորներ, իսկ ժամանակակից գյուղատնտեսական մեքենաներ քիչ է տարածված երկրում: Ցանքային տարածությունները կազմում են մոտ 5 միլիոն հեկտար, որի կեսից ավելին գրավում են հացահատիկային կուլտուրաները: Երկրում բավական տարածված են նաև տեխնիկական կուլտուրաները՝ ծխախոտը, բամբակը, խաղողի այգիները, պտղատու այգիները, Կազանլըկի վարդը, ինչպես նաև շաքարի ճակնդեղի, արևածաղկի, կանեփի և այլ կուլտուրաները: Անասնապահությունը երկրի գյուղատնտե-

ռության մեջ երկրորդական դեր է խաղում և զգալիորեն նվազում է անասունների գլխաքանակը:

Արդյունաբերությունը երկրում թույլ է զարգացած: Չնայած երկրում կան հանքային հարստություններ (քարածուխ, բազմամետաղներ, պղինձ, մարգանեց, աղահանքեր և այլն), բայց արդյունաբերական շահագործման են ենթարկվում միայն քարածուխը և պղինձը, այն էլ շատ քիչ քանակությամբ: Քարածուխի հանույթը հազիվ երկու միլիոն տոննայի է հասնում, իսկ պղնձինը՝ 1200 տոննայի: Արդյունաբերությունը նույնպես աչքի է ընկնում մանր ձեռնարկություններով և թույլ է մեքենայացված: Արդյունաբերության մեջ գերիշխում են թեթև և սննդի արդյունաբերության ճյուղերը (ալրաղացային, ծխախոտի, տեքստիլ և մյուսները): Բուլղարիայի էկոնոմիկայի մեջ մեծ դեր է խաղում օտարերկրյա կապիտալը:

Երկրում տրանսպորտը նույնպես թույլ է զարգացած: Երկաթուղիների ընդհանուր երկարությունը կազմում է մոտ 4.000 կիլոմետր, որի մի քառորդը նեղլիծ ուղիներ են: Բուլղարիայի վրայով է անցնում տրանս-եվրոպական երկաթուղին՝ Բեռլին—



Վիեննա—Բելգրադ—Սոֆիա և ապա դեպի Ստամբուլ: Էլեկտրաքարշ ունի միայն մայրաքաղաք Սոֆիան: Ավտոխճուղիների երկարությունը մեծ չէ, իսկ ավտոմեքենաների քանակը 1930 թ. հասնում էր 6099-ի: Ծովային հաղորդակցությունը երկրի տնտեսության համար կարևոր նշանակություն ունի, բայց սեփական ծովային տորմիղի տոննաժը խիստ փոքր է (26.400 տոննա): Սև ծովի նավահանգիստներից կարևոր են Բուրգասն ու Վառնան: Գետային նավարկությունը Դանուբի վրա էական դեր է խաղում Բուլղարիայի և Դանուբյան երկրների միջև կատարվող առևտրի մեջ: Դանուբի վրա կարևոր նավահանգիստներից են՝ Ռուսսեն (Ռուշչուկ), Վիդին և մյուսները: Բուլղարիան արտահանում է գյուղատնտեսական մթերքներ (հացահատիկ, ծխախոտ, եթերայուղեր, գինի, պտուղներ, կաշի և այլն), իսկ ներմուծում է գլխավորապես արդյունաբերական ապրանքներ:

Բուլղարան հանդիսանում է կոնստիտուցիոն միապետություն (թագավորություն): 1879 թ. կոնստիտուցիայով (որն ուղղումների է ենթարկվել 1893, 1911 և 1934 թվականներին) սահմանված

ժողովրդական ժողովը (պարլամենտ) փաստորեն խորհրդակցական է: 1923 թ. ժողովրդական ռևոլյուցիոն շարժումները արյունալի կերպով ճնշվեցին, երկրում տիրեց տեռորի, ռեակցիայի ռեժիմը: Քաղաքական բոլոր պարտիաները «ինքնացրման» ենթարկվեցին, իսկ կոմունիստական պարտիան դեռևս 1923 թվին օրենքից դուրս հայտարարվեց:

Գերմանական իմպերիալիզմը իր աշխարհանվաճ պլանների մեջ միշտ էլ հատուկ ուշադրություն և տեղ է տվել Բուլղարիային, նկատի ունենալով նրա աշխարհագրական դիրքի ստրատեգիական կարևորությունը, աշխատել է ձլատել, թուլացնել և իր քաղաքականության գործիքը դարձնել Բուլղարիային, ձգտել է դուրս բերել նրան Ռուսաստանի դեմ, խորթացնել ու հեռացնել սլավոնական ժողովուրդների ընտանիքից: Բուլղարիայի՝ Ֆիլովի գլխավորած պրոֆաշիստական կառավարությունը, 1941 թ. մարտի 1-ին ստորագրելով «Առանցքի երկրների» միանալու պակտը, երկիրը նորից դրեց կործանարար ուղու վրա: Գերմանիան իր զորքերը մտցնելով Բուլղարիա, նրա ամբողջ էկոնոմիկան վերածել էր գերմանական



ռազմական էկոնոմիկայի կցորդի և հանուն գերմանական ֆաշիզմի զավթողական պլանների, նրան մղում էր նորանոր ավանտյուրաների: 1941 թ. դեկտեմբերին, Բեռլինի պահանջով Բուլղարիան պատերազմ հայտարարեց Անգլիային և Ամերիկայի Միացյալ Նահանգներին: Բորիս թագավորի մահվանից հետո, Բեռլինի ցուցումով կազմվեց Բորիսի որդի փոքրահասակ Սիմեոն 2-րդի խնամակալական խորհուրդ, բաղկացած Ֆիլովից, գեներալ Միխովից և Պրինց Կիրիլլից, պրոֆաշիստներից, որոնք իրենց ամբողջապես դրին հիտլերյան կլիկի տրամադրության տակ և հանուն ֆաշիստական Գերմանիայի շահերի թշնամական ձեռնարկումներ սկսեցին հարևան ժողովուրդների հանդեպ: Նրանք գերմանական ժանդարմի դերն ստանձնեցին, երբ զորքերը մտցնելով Հարավսլավիա և Հունաստան օգնեցին ժողովուրդների թշնամի ֆաշիստական բանակին ճնշելու ժողովրդական-ազատագրական շարժումը այդ երկրներում: Չնայած Բուլղարիան Սովետական Միությանը պատերազմ չէր հայտարարել, բայց օգնում էր Գերմանիային Սովետական Միության դեմ մղվող պատերազմում:

Գերմանական ֆաշիզմի և նրա բուլղարական գործակալության բոլոր փորձերը՝ Բուլղարիան պատերազմի դուրս բերելու եղբայր սլավոնների՝ ռուսների դեմ, վերջացան լիակատար անհաջողությամբ: Ժողովուրդների ազատարար Կարմիր Բանակը 1944 թ. օգոստոսին, նոր և ծանր պարտության մատնեց գերմանա-ռումինական բանակին: Կարմիր Բանակի հաղթանակների շնորհիվ Ռումինիայում, տապալվեց գերմանական ֆաշիզմի գործակալ Անտոնեսկուի կառավարությունը և երկիրը մաքրվեց գերմանական ջախջախված բանակներից: Ձեռք բերած հաղթանակներն ամբողջապես փոխեցին ռազմա-քաղաքական դրությունը Բալկաններում:

Բուլղարական ժողովուրդը նույնպես ազատագրվեց օտարերկրյա լծից, սլավոն եղբայրների, Կարմիր Բանակի օգնությամբ: Բուլղարական ժողովուրդն ակտիվ կերպով պայքարում էր գերմանացիների և նրանց բուլղարական գործակալների դեմ, համախմբելով իր ուժերը «Հայրենական ճակատ» միության շուրջը: Այդ միության մեջ մտնում էին՝ բանվորական պարտիան, Հողագործական միության ձախ թևը, սոցիալ-դեմոկրատական պարտիայի ձախ թևը



վը և «Զվենո» քաղաքական խումբը (որն զգալի ազդեցություն ունի սպայության և ինտելիգենցիայի շարքերում), կոոպերատիվ, կուլտուր-լուսավորչական և այլ կազմակերպություններ: «Հայրենական ճակատ» միությունը, նոր կառավարության վարչապետ Կիմոն Գեորգիևի ղեկավարությամբ, ձերբակալել է տվել բոլոր պրոֆաշիստ մինիստրներին, որոնք իշխանության գլուխն էին գտնվում 1941 թ. հունվարից, ինչպես և 25-րդ գումարման ժողովրդական ժողովի այն բոլոր դեպուտատներին, որոնք պաշտպանել են այդ մինիստրությունների գլխավորած կառավարությունների կործանարար քաղաքականությունը: «Հայրենական ճակատ»-ի կառավարությունը կազմված է Հողագործության միության 4 ներկայացուցիչներից «Զվենո» պարտիայի՝ 4, կոմունիստական պարտիայի՝ 4, սոցիալ-դեմոկրատական՝ 2 և պրոգրեսիվ ինտելիգենցիայի 2 ներկայացուցիչներից:

Բուլղարական կառավարությունը դիմելով դաշնակից երկրներին՝ Սովետական Միությանը, Մեծ Բրիտանիային և Ամերիկայի Միացյալ Նահանգներին խնդրել էր զինադադար: Դաշնակից կառավարություն-

ները որպես բանակցությունների սկսելու նախապայման, պահանջեցին Բուլղարիայից, իր բոլոր զորքերն ու աստիճանավորները էվակուացնելու Հունական և Հարավսլավական տերիտորիաներից: Բուլղարական նոր կառավարությունը կատարեց դաշնակից երկրների պահանջը:

1944 թ. հոկտեմբերի 28-ին Մոսկվայում կնքվեց զինադադարի համաձայնագիր, մի կողմից Սովետական Միության, Միացյալ Թագավորության և Ամերիկայի Միացյալ Նահանգների և մյուս կողմից՝ Բուլղարիայի միջև: Զինադադարի համաձայնագիրը, արձանագրելով Բուլղարիայի կողմից Գերմանիային պատերազմ հայտարարելն ու Հունգարիայի հետ հարաբերությունների խզումը, պարտավորեցնում է զինաթափման ենթարկել երկրում եղած գերմանական զինվորական ուժերին և որպես ռազմագերիների դաշնակիցներին հանձնել, ինչպես և ներկալել Գերմանիայի և նրա սատելիտների քաղաքացիներին: Համաձայնագիրը պարտավորեցնում է Բուլղարիային, առանձնացնել և դաշնակիցների (Սովետական) Գերագույն հրամանատարության տրամադրության տակ դնել ռազմական ուժեր (ցամաքային, ծովային և օդային)



Գերմանիայի դեմ մղվող պատերազմին մասնակցելու համար: Բուլղարիան պարտավորվում է ապահովել Սովետական և մյուս դաշնակից զորքերի, երկրի տերիտորիայում ազատ տեղաշարժերը բոլոր ուղղություններով, եթե այդ անհրաժեշտ լինի, ցույց տալով ամեն տեսակ աջակցություն և տալով իր տրամադրության տակ եղած բոլոր միջոցները: Դուրս բերելով իր զորքերն օկուպացիայի ենթարկված երկրներից, Բուլղարիան պարտավորվում է վճարել այդ երկրներին և նրանց բնակչությանը օկուպացիայի շրջանում հասցրած վնասները, վերադարձնելով այդ երկրներից կողոպտված ամբողջ գույքը: Զինադադարի համաձայնագիրը բուլղարական կառավարությանը պարտավորեցնում է ցրելու երկրում եղած պրոֆաշիստական և ֆաշիստական քաղաքական, ռազմական ու ռազմականացված, ինչպես և այն կազմակերպությունները, որոնք թշնամական պրոպագանդա են մղել միավորված ժողովուրդների դեմ, իսկ հետագայում թույլ չտալու այդպիսի կազմակերպությունների գոյությունը: Ձերբակալվելու և դատի են տրվելու Բուլղարիային Գերմանիայի կողմում պա-

տերազմի դուրս բերած հանցագործ բոլոր անձնավորությունները: Երկրում վերականգնվում է դեմոկրատական ազատությունը, ինչպես և համաձայնագրի այլ կարևորագույն միջոցառումները:

Հայրենական ճակատի բուլղարական կառավարության Մոսկվա ժամանած դելեգացիան, դաշնակից երկրների զինադադարի կոնֆերանսի ներկայացուցիչներին արած հայտարարության մեջ՝ նշելով բուլղարական ժողովրդի՝ գերմանական օկուպանտների և նրանց բուլղարական գործակալների նախկին ռեժիմի դեմ պարտիզանական պայքարի և ներկայումս ժողովուրդների թշնամի գերմանական բանակներին ջախջախելու և Բալկաններից վռնդելու գործում բուլղարական բանակների մասնակցությունը, ասում է. «Բուլղարական երկրագործ մարտիկների շատ նոր գերեզմաններ արդեն ծածկում են մեր հարևան բազմաչարչար Հարավսլավիայի վայրի ժայռերը, արդեն բուլղարական երկրագործների շատ նոր արյուն է թափվել նրա ամայացված հովիտներում և խառնվել մեծ Մարշալ Ստալինի, քաջ մարշալ Տիտոյի եղբայրական ժողովուրդների ու մեծ դաշնակիցների զորքերի



այժմ թափվող արյանը: Իր երկրագործ զավակներին և իր ջանքերը զոհաբերելով դեմոկրատիայի անավարտված գործին Բուլղարական ժողովուրդը ցանկանում է միայն ամբողջ աշխարհին և ամենից առաջ մեծ դաշնակիցներին ցույց տալ, որ նա պատրաստ է իր սեփական արյունով սրբելու այն բիծը, որ նախկին հանցագործ կառավարողները նետել են իր ճակատին»: Իր ազատարար Սովետական Միության հզոր Կարմիր Բանակի օգնությամբ, բուլղարական ժողովուրդը ազատագրվեց ֆաշիզմի ստրկացումից:

Դոցենտ Ս. ԲԵՐԲԵՐՅԱՆ

---

> «Իդեական մարքսիստական-լենինյան կոփվածությունը, տեսության հեռանկարների ըմբռնումն օգնեցին բոլշևիկների հիմնական կորիզն, որ համախմբված էր Լենինի շուրջը, պաշտպանելու պարտիան և նրա տեսության սկզբունքները»:
>
> «ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց»

# ՀԱՄ Կ(Բ)Պ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՌՈՏ ԴԱՍԸՆԹԱՑԻ ԻՆՔՆՈՒՐՈՒՅՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՂՆԵՐԻՆ ՕԳՆՈՂ ՀԻՄՆԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՂԲՅՈՒՐՆԵՐԻ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՑՈՒՑԱԿ*)

## *ԳԼՈՒԽ* IV

## ՄԵՆՇԵՎԻԿՆԵՐԸ ԵՎ ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԸ ՍՏՈԼԻՊԻՆՅԱՆ ՌԵԱԿՑԻԱՅԻ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ: ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ ՁԵՎԱՎՈՐՎԵԼԸ ՈՐՊԵՍ ԻՆՔՆՈՒՐՈՒՅՆ ՄԱՐՔՍԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱ (1908—1912 ԹՎԱԿԱՆՆԵՐԸ):

### 1. ՍՏՈԼԻՊԻՆՅԱՆ ՌԵԱԿՑԻԱՆ: ՔԱՅՔԱՅՈՒՄՆ ԻՆՏԵԼԻԳԵՆՑԻԱՅԻ ՕՊՈԶԻՑԻՈՆ

*) *Սկիզբը* «*Ա. Բ.*»-*ի* № 18—19-*ում*:



ԽԱՎԵՐՈՒՄ: ԱՆԿՈՒՄԱՅՆՈՒԹՅՈՒՆ: ՊԱՐՏԻԱԿԱՆ ԻՆՏԵԼԻԳԵՆՑԻԱՅԻ ՄԻ ՄԱՍԻ ԱՆՑՆԵԼԸ ՄԱՐՔՍԻԶՄԻ ԹՇՆԱՄԻՆԵՐԻ ԲԱՆԱԿԸ ԵՎ ՄԱՐՔՍԻԶՄԻ ԹԵՈՐԻԱՆ ՌԵՎԻԶԻԱՅԻ ԵՆԹԱՐԿԵԼՈՒ ՓՈՐՁԵՐԸ: ԼԵՆԻՆԻ ՀԱԿԱՀԱՐՎԱԾԸ ՌԵՎԻԶԻՈՆԻՍՏՆԵՐԻՆ ՆՐԱ «ՄԱՏԵՐԻԱԼԻԶՄ ԵՎ ԷՄՊԻՐԻՈԿՐԻՏԻՑԻԶՄ» ԳՐՔՈՒՄ ԵՎ ՄԱՐՔՍԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԹԵՈՐԻԱԿԱՆ ՀԻՄՔԵՐԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅՈՒՆԸ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— *Քաղաքական պարտիաները Ռուսաստանում*: 1912: *Ընտիր երկեր երկու հատորի մեջ. հատ.* I, *էջ* 827—838:

ЛЕНИН В. И. — Реакция начинает вооруженную борьбу. 1906. Соч. т. IX стр. 333—336.

ԼԵՆԻՆ Վ. Ի.— *Պետերբուրգի համաքաղաքային կոնֆերենցիայում հունիսի* 21 (8)-*ին՝ սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիայի դեպի երրորդ Դուման ունենալիք վերաբերմունքի հարցի մասին կատարած զեկուցման թեզիսները: Վ. Ի. Լենին և Ի. Վ. Ստալին.— «ՀամԿ(բ)Պ պատմության ուսումնասիրության*

շուրջը» գրքում. պրակ IV, էջ 7—9: Պետհրատ. Քաղ. գրակ. հրատ. 1938. 115 էջ:

ЛЕНИН В. И. — Революция и контр-революция. 1907.
Соч. т. XII, стр. 71—77.

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ագրարային նոր քաղաքականություն: 1908: Լենին և Ստալին. Ընտիր երկեր մի հատորի մեջ. էջ 216—220. ՀԿ(բ)Պ ԿԿ. Կուսհրատ. 1937. 1187 էջ:

ЛЕНИН В. И. — О некоторых чертах современного распада. 1908.
Соч. т. XII, стр. 296—303.

ЛЕНИН В. И.—Об оценке текущего момента. 1908 г. Соч. т. XII, стр.375—385

ЛЕНИН В. И. — О некоторых источниках современного идейного разброда. 1909 г. Соч. т. XIV, стр. 197—202.

ЛЕНИН В. И.—Наши упразднители. (О г. Потресове и В. Базарове) 1911 г.
Соч. т. XV, стр. 78—92.

ԼԵՆԻՆ Վ. Ի. Ստոլիպինը և ռևոլյուցիան: 1911. Ընտիր երկեր երկու հատորի մեջ. հատ. I, էջ 760—769:

ԼԵՆԻՆ Վ. Ի. Վերջին կափարիչը: 1912: Լենին և Ստալին. Ընտիր երկեր մի հատորի մեջ. էջ 242—247. ՀԿ(բ)Պ ԿԿ Կուսհրատ, 1937. 1187 էջ:



ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ինչպես ավելացնել շնչային սպառման չափերը Ռուսաստանում: Վ. Ի. Լենին և Ի. Վ. Ստալին— «ՀամԿ(բ)Պ պատմության ուսումնասիրության շուրջը» գրքում. պրակ առաջին, էջ 15—16. Պետ. քաղ. գրակ. հրատ. 1938 թ.

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ: (Քննադատական նոթեր մի ռեակցիոն փիլիսոփայության մասին): Երկեր հատ. XIII, էջ 7—414:

## 2. ԴԻԱԼԵԿՏԻԿԱԿԱՆ ԵՎ ՊԱՏՄԱԿԱՆ ՄԱՏԵՐԻԱԼԻԶՄԻ ՄԱՍԻՆ:

ՄԱՐՔՍ Կ. և ԷՆԳԵԼՍ Ֆ.— Կոմունիստական պարտիայի մանիֆեստը: Պետհրատ. Քաղ. գրակ. հրատ. 1938: 132 էջ:

МАРКС К. — Послесловие ко второму изданию (1-го тома «Капитала») 1873.
Соч. т. XVII, стр. 10—20.

ՄԱՐՔՍ Կ.— Քաղաքատնտեսության քննադատության շուրջը: (Առաջաբան). էջ 61—66: Կուսհրատ. 1932. 260 էջ:

МАРКС К. — Нищета философии. (Ответ

на «Философию нищеты г-на Прудона). 1846—1847 г. г.
Соч. т. V, стр. 295—416.
ՄԱՐՔՍ Կ.— Թեզիսներ Ֆոյերբախի մասին: Ֆ. Էնգելս— Լյուդվիգ Ֆոյերբախ գրքում. էջ 67—70. Կուսհրատ. 1935. 116 էջ:
МАРКС К. и ЭНГЕЛЬС Ф. — Немецкая идеология. (Критика новейшей немецкой философии в лице ее представителей Фейербаха, Б. Бауэра и Штирнера и немецкого социализма в лице его различных пророков). 1845 — 1846 г. г. I — Фейербах. (Противоположность материалистического и идеалистического воззрения).
Соч. т. IV, стр. 5—68.
ԷՆԳԵԼՍ Ֆ.— Լյուդվիգ Ֆոյերբախը և գերմանական կլասիկ փիլիսոփայության վախճանը: Կուսհրատ. 1935. 116 էջ:
ԷՆԳԵԼՍ Ֆ.— Բնության դիալեկտիկա. ՀԿ(բ)Պ ԿԿ հրատարակչություն. 1936: 434 էջ:
ԷՆԳԵԼՍ Ֆ.— Անտի-Դյուրինգ: (Գիտության հեղաշրջումը պարոն Օյգեն Դյուրինգի կողմից): ՀԿ(բ)Պ ԿԿ հրատարակչություն. 1936. 428 էջ:
ԷՆԳԵԼՍ Ֆ.— Սոցիալիզմի զարգացումը ուտոպիայից դեպի գիտություն:



Պետհրատ. Քաղ. գրակ. հրատ. 1940, 66 էջ:
ԷՆԳԵԼՍ Ֆ.— Պատմական մատերիալիզմի մասին: 1892. Պետհրատ. Քաղ. գրակ. հրատ. 1939. 42 էջ:
ՄԱՐՔՍ Կ. և ԷՆԳԵԼՍ Ֆ.— Պատմական մատերիալիզմի վերաբերյալ նամակներից. 1846—1894 թ.թ. Կ. Մարքս. Ընտիր երկեր երկու հատորում. հատ. I, էջ 418—441. Քաղ. գրակ. Պետ. հրատ. 1941 թ.:
ԷՆԳԵԼՍ Ֆ.— Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը: ՀԿ(բ)Պ ԿԿ հրատ. 1936. 258 էջ:
ԼԵՆԻՆ Վ. Ի.— Տասը հարց ռեֆերենտին: 1908 թ. Լենին. Երկեր հատ. XIII, էջ 1—6: Կուսհրատ, Երևան, 1933 թ.:
ԼԵՆԻՆ Վ. Ի.— Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ: (Քննադատական դիտողություններ մի ռեակցիոն փիլիսոփայության մասին): Երկեր, հատ. XIII, էջ 7—414:
ԼԵՆԻՆ Վ. Ի.— Մարքսիզմի պատմական զարգացման մի քանի առանձնա-

հատկությունների մասին: Լենին Վ. Ի.— Մարքս-Էնգելս-Մարքսիզմ. էջ 150—155: Պետհրատ. Քաղ. գրակ. հրատ. 1939. 188 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Մարքսիզմի երեք աղբյուրներն ու երեք բաղկացուցիչ մասերը: Լենին Վ. Ի.— Մարքս-Էնգելս-Մարքսիզմ: էջ 168—174. Պետհրատ. Քաղ. գրակ. հրատ. 1939, 168 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Դիալեկտիկայի հարցի շուրջը: Երկեր. հատ. XIII, էջ 415—424:

ЛЕНИН В. И. — Философские тетради. 1895 — 1920 г. Госполитиздат. 1938. 474 стр.

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Անարխիզմ թե՞ սոցիալիզմ: (Հոդվածներ 1906—1907 թ. թ.). Քաղվածքներ զետեղված Լ. Բերիայի «Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների պատմության հարցի շուրջը» գրքում. էջ 96—108: ՀԿ(բ)Պ ԿԿ հրատ. 1936, 217 էջ:

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Լենինիզմի հիմունքների մասին: II— Մեթոդ: III—Թեորիան:



Լենինիզմի հարցերը, հայերեն. III հրատ. էջ 17—40:

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.—Դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի մասին: (Սեպտեմբեր 1938 թ.): ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց. էջ 140—178:

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Հաշվետու զեկուցում պարտիայի XVIII համագումարում ՀամԿ(բ)Պ ԿԿ աշխատանքի մասին: III. ՀամԿ(բ)Պ հետագա ամրապնդումը: IV. Թեորիայի մի քանի հարցեր: էջ 58—73: Պետհրատ. Քաղ. գրակ. հրատ. 1939. 78 էջ:

ՊԼԵԽԱՆՈՎ Գ. Վ.— Պատմության նկատմամբ մոնիստական հայացքի զարգացման շուրջը: 1894 թ. Պետհրատ. Քաղ. գրակ. հրատ. 1939. 374 էջ:

ՊԼԵԽԱՆՈՎ Գ. Վ.— Պատմության մատերիալիստական ըմբռնման մասին: 1897 թ. Պետհրատ. Քաղ. գրակ. հրատ. 1939. 52 էջ:

## 3. ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐՆ ՈՒ ՄԵՆՇԵՎԻԿՆԵՐԸ ՍՏՈԼԻՊԻՆՅԱՆ ՌԵԱԿՑԻԱՅԻ ՏԱՐԻՆԵՐԻՆ: ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ ՊԱՅՔԱՐՆ ԸՆԴԴԵՄ ԼԻԿՎԻԴԱՏՈՐՆԵՐԻ ՈՒ ՕՏԶՈՎԻՍՏՆԵՐԻ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Քաղաքական դիտողություններ: 1908: Ընտիր երկեր երկու հատորում. էջ 747—753:

ЛЕНИН В. И. — Всероссийская (декабрьская, конференция РСДРП. 3—9 января 1909 г. (21—27 декабря 1908 г.). Париж.

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ճանապարհի վրա: 1909. Լենին և Ստալին.—Ընտիր երկեր մի հատորի մեջ. էջ 220—229: Կուսհրատ. 1937, 1187 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.—«Пролетарий»-ի ընդլայնած խմբագրության խորհրդակցության բանաձևերը: Վ. Ի. Լենին և Ի. Վ. Ստալին ՀամԿ(բ)Պ պատմության ուսումնասիրության շուրջը գրքում. պրակ IV, էջ 29—39. Պետհրատ. Քաղ. գրակ. հրատ. 1938. 115 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Լիկվիդատորության լիկվիդացիան: 1909. Վ. Ի. Լենին և Ի. Վ. Ստալին.— «ՀամԿ(բ)Պ պատմության ուսումնասիրության շուրջը» գրքում. պրակ IV. էջ 39—78. Պետ-



հրատ. Քաղ. գրակ. հրատ. 1938. 116 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.—Օտզովիզմի և աստվածաշինարարության կողմնակիցների ֆրակցիայի մասին: 1909. Պետհրատ. Քաղ. գրակ. հրատ. 1940. 48 էջ:

ЛЕНИН В. И. — Проект резолюции об укреплении партии и ее единства. 1909 г.
Соч. т. XIV, стр. 180.

ЛЕНИН В. И. — О фракции «впередовцев». 1910. Соч. т. XIУ, стр. 346—351.

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Իշխանության սոցիալական կառուցվածքի, հեռանկարների և լիկվիդատորության մասին: 1911. Ընտիր երկեր վեց հատորի մեջ. հատ. II, էջ 619—643:

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Նամակ Կովկասից: 1909. Լենին և Ստալին.— ՀամԿ(բ)Պ պատմության ուսումնասիրության շուրջը» գրքում. պրակ IV, էջ 53—60. Պետհրատ. Քաղ. գրակ. հրատ. 1938. էջ 115:

ԲԵՐԻԱ Լ. Պ.— Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների պատմության հարցի շուրջը: Գլ. III. Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպու-

թյունների պատմության շուրջը ռեակցիայի և բանվորական շարժման վերելքի շրջանում (1907—1913)· էջ 119—175·
ՀԿ(բ)Պ ԿԿ հրատ. 1936· էջ 217:

## 4. ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ ՊԱՅՔԱՐՆ ԸՆԴԴԵՄ ՏՐՈՑԿԻԶՄԻ: ՕԳՈՍՏՈՍՅԱՆ ՀԱԿԱՊԱՐՏԻԱԿԱՆ ԲԼՈԿԸ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— «Հուդա Տրոցկու ամոթի գույնի մասին»: 1911· Լենին և Ստալին.— «ՀամԿ(բ)Պ պատմության ուսումնասիրության շուրջը» գրքում. պրակ IV, էջ 74.
Պետհրատ. Քաղ. գրակ. հրատ. 1938 115 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ներպարտիական պայքարի պատմական իմաստը Ռուսաստանում: 1910·
Ընտիր երկեր վեց հատորի մեջ, հատ. II· էջ 520—542:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Հաշտվողականների կամ առաքինիների նոր Փրակցիայի մասին: 1911·
Ընտիր երկեր վեց հատորի մեջ, հատ. II, էջ 643—667:



ԼԵՆԻՆ Վ. Ի. և ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Ստոլիպինյան «բանվորական» պարտիայի բանակից. 1911· Լենին և Ստալին— «ՀամԿ(բ)Պ պատմության ուսումնասիրության շուրջը» գրքում. պրակ IV. էջ 75—79:
[Վ. Ի. Լենինը նույն վերնագրով երկու հոդված ևս ունի. տես՝
Собр. соч. т. XV, стр. 251—254, 297—301]

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Տրոցկու դիվանագիտության և պարտիականների մի պլատֆորմի մասին: 1911· Լենին և Ստալին.— «ՀամԿ(բ)Պ պատմության ուսումնասիրության շուրջը» գրքում. պրակ IV. էջ 68—74·
Պետհրատ, Քաղ. գրակ. հրատ. 1938 115 էջ:

ЛЕНИН. В. И. — Открытое письмо ко всем социал-демократам партийцам. 1910 г. Ленинский сборник, т. XXI, стр. 289—302.

ЛЕНИН В. И. — Нелегальная партия и легальная работа. 1912 г.
«Пролетарская революция», 1938 г. № 9 стр. 187—193.

ԼԵՆԻՆ Վ. Ի.— «Օգոստոսյան» բլոկի քայքայումը: 1914· Լենին և Ստալին,—

ընտիր երկեր մի հատորի մեջ. էջ 273—276:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Միասնականության խախտման մասին, որը քողարկվում է միասնականության վերաբերյալ աղաղակներով: 1914:
Ընտիր երկեր երկու հատորում, հայերեն II հրատ. էջ 794—815:

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Նամակ Լենինին Սոլվիչեգոդսկի աքսորավայրից (1910 թ.): Լենին և Ստալին— «ՀամԿ(բ)Պ պատմության ուսումնասիրության շուրջը» գրքում. պրակ IV, էջ 60—63:
Պետհրատ. Քաղ. գրակ. հրատ. 1938. 115 էջ:

СТАЛИН И. В. — Ленин и вопрос о блоке в партии. В книге: Ленин и Сталин. Сборник произведений к изучению истории ВКП(б). Том I. стр. 557—558. Партиздат. 1937. 932 стр.

## 5. ՊՐԱԳԱՅԻ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԵՆՑԻԱՆ 1912 ԹՎԱԿԱՆԻՆ: ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ ՁԵՎԱՎՈՐՎԵԼԸ ՈՐՊԵՍ ԻՆՔՆՈՒՐՈՒՅՆ ՄԱՐՔՍԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱ:

ԼԵՆԻՆ. Վ. Ի.— Պարտիական ճգնաժամի լուծումը: 1911. Ընտիր երկեր վեց



հատորի մեջ. հատ. II, էջ 667—679:

ԼԵՆԻՆ Վ. Ի.—ՌՍԴԲՊ Պրագայի կոնֆերենցիայի բանաձևեր 1912 թ.: Լենին և Ստալին,— «ՀամԿ(բ)Պ պատմության ուսումնասիրության շուրջը» գրքում. պրակ IV, էջ 87—101:
Պետհրատ. Քաղ. գրակ. հրատ. 1938. 115 էջ:

ЛЕНИН В. И. — Доклад международному социалистическому бюро о Всероссийской конференции РСДРП. 1912 г. Соч. т. ХУ, стр. 409—410.

ЛЕНИН В. И. — Положение в РСДРП и ближайшие задачи партии. 1912 г. Соч. т. ХУI, стр. 15—20.

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ա. Մ. Գորկուն: [Երկու նամակ ուղարկված Կապրի կղզին: 1912 թ.]: Վ. Ի. Լենին— «Նամակներ Գորկուն» գրքում: էջ 53—54, 55—57.
Պետհրատ. Քաղ. գրակ. հրատ. 1939. 86 էջ:

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Կենտրոնական Կոմիտեի քաղաքական հաշվետվությունը. ՀամԿ(բ)Պ XV համագումարին: Եզրափակման խոսք, էջ 79—94.
Կուսհրատ. 1937. 94 էջ:

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Լենինի մասին: Ճառ

Կրեմլյան կուրսանտների երեկույթում 1924 թ. հունվարի 28-ին: Ի. Ստալին.— «Լենինի մասին» գրքում. էջ 22—32.

Պետհրատ. Քաղ. գրակ. հրատ. 1939. 50 էջ:

ОРДЖОНИКИДЗЕ Г. К. — Отчет о заседаниях Российской организационной комиссии по созыву общепартийной конференции. 1911 г. В книге: Г. К. Орджоникидзе. Избранные статьи и речи. 1911—1937 г. г., стр. 1—16. Госполитиздат. 1939. 528 стр.

ԲԵՐԻԱ Լ. Պ.— Պրահայի կոնֆերենցիայի հարցի շուրջը. պատասխան ընկերներին: Հայկուսհրատ 1935. 30 էջ:

Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալին.— Համառոտ կենսագրություն (ՀամԿ(բ)Պ ԿԿ-ին կից Մարքսի-Էնգելսի-Լենինի ինստիտուտ). Հատված III:

Քաղաք. գրակ. պետ. հրատ. 1940:

---

Պատ. խմբագիր՝ Ս. ԱՐԵՇՅԱՆ

ՎՖ 00670 պ. № 479 տիրաժ 5000

ՀՍՍՌ Ժողկոմսովետին կից թերթերի և ամսագրերի տպարան. 1945 թ.

ԳԻՆԸ 1 ՌՈՒԲ.

Отдел пропаганды и агитации ЦК КП(б)
Армении
**БЛОКНОТ АГИТАТОРА**
*№ 9 (26)*